Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈՒՆԻՍ 11 1961



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*



# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

*Գլխավորն այն է, որ ամբողջ երկիրը համակված է աշխատանքային ավյունով, որը յուրաքանչյուր օր աճում է, որ կոմունիզմի կառուցումը հիրավի դարձել է համաժողովրդական գործ։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

*Անթառամ փառքով է պսակված հարազատ Կոմունիստական պարտիան։ Նա միշտ էլ անձնվիրաբար ծառայել և ծառայում է ժողովրդի բարօրության ու նրա երջանկության համար։ Այդ է պատճառը, որ սովետական ժողովուրդը ջերմորեն սիրում է իր հարազատ Կոմունիստական պարտիային և անսահման նվիրված է նրան։ Դեռ նոր էր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը որոշում ընդունել ՍՄԿՊ XXII համագումար հրավիրելու մասին, երբ երկրով մեկ ծավալվեց նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը։ Ամենուրեք աշխատավորներն ստանձնեցին նոր պարտավորություններ և խոստացան ՍՄԿՊ XXII համա-*

գումարը դիմավորել արժանավայել գործերով, յոթնամյակի երրորդ տարվա պլանները կատարել ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով։

Այժմ օրեցօր ծավալվում է ՍՄԿՊ XXII համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը և նորանոր հաջողություններ բերում մեր սիրասուն Հայրենիքին։ Այս տարվա անցած չորս ամսում երկիրը պլանից դուրս ստացել է 55 հազար տոննա չուգուն, 312 հազար տոննա պողպատ, 157 հազար տոննա պրոկատ, 85 հազար տոննա ցեմենտ, 612 հազար տոննա նավթ, 2,5 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 27 միլիոն քառակուսի մետր գործվածքեղեն, 504 հազար զույգ կաշվե կոշիկներ։ Երկրում անընդհատ աճում ու ծավալվում է կոմունիստական աշխատանքի պատվին արժանանալու համար շարժումը։ Արդեն 124 հազար բրիգադա և տեղամաս, ավելի քան 450 հազար բանվորներ և տասնյակ ձեռնարկություններ արժանացել են այդ պատվավոր կոչմանը։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նույնպես ջանք չեն խնայում Հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը աշխատանքային նոր հաջողություններով դիմավորելու համար։ Նոր թափով ծավալելով նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը, ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ կատարեցին այս տարվա անցած չորս ամսվա համախառն արտադրանքի պլանը։ Ուրախալի է նշել, որ անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի թողարկումը ռեսպուբլիկայում ավելացել է 7 տոկոսով։

Այս տարվա առաջին եռամսյակում կատարվել և գերակատարվել է արտադրանքի այնպիսի կարևորագույն տեսակների արտադրության պլանը, ինչպիսին է էլեկտրաէներգիայի, ծծմբաթթվի, սինթետիկ ամոնիակի, կաուստիկ սոդայի, հանքային պարարտանյութերի, մինչև 100 կիլովատանոց էլեկտրաշարժիչների, շարժական էլեկտրակայանների, մետաղահատ հաստոցների, ավտոդողերի, ցեմենտի, շիֆերի, հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների և արտադրանքի շատ տեսակների թողարկման պլանը։

Նախահամագումարյան սոցիալիստական մրցության փայլուն արդյունքներից է նաև այն, որ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները համախառն արտադրանքի արտադրության յոթնամյակի երրորդ

տարվա առաջին եռամսյակի համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարել են 102,7 տոկոսով։ Այդ նշանակում է, որ այս տարվա առաջին եռամսյակում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արտադրանքի թողարկումն աճել է 7,3 տոկոսով։

Ինչպես տեսնում ենք, նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը մեծ բարիք է բերում մեր երկրին։ Այս տարվա երեք ամսում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ մեր ռեսպուբլիկայում ավելի է արտադրվել 747 տոննա հանքային պարարտանյութ, 365 հատ գեներատոր (մինչև 100 կիլովատանոց), 12.815 հատ էլեկտրաշարժիչ (մինչև 100 կիլովատանոց), 1.180 հատ շարժական էլեկտրակայան, 603 հատ մետաղահատ հաստոց, 1.667 կիլոմետր տեղակայման հաղորդալար, 25 հազար հատ ավտոդող, 3 միլիոն 158 հազար պայմանական սալով շիֆեր, 12.269 խորանարդ մետր երկաթբետոնե կոնստրուկցիաներ ու դետալներ, 2.566 հազար քառակուսի դեցիմետր երեսացու կաշի։

Նույն ժամանակաշրջանում մեծ չափերով ավելացել է սննդամթերքի և կոշկեղենի արտադրությունը։ Նախորդ տարվա համեմատությամբ այս տարվա առաջին եռամսյակում ավելի է արտադրվել 431 հազար զույգ գուլպեղեն, 195 հազար զույգ կաշվե կոշիկ, 177 տոննա պանիր, 643 տոննա անարատ կաթնամթերք, 185 տոննա երշիկեղեն, 1.309 տոննա շաքարավազ, 137 հազար ուբլու կահույք և ժողովրդական սպառման շատ ուրիշ ապրանքներ։

Նախահամագումարյան մրցության այս օրերին ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները ձգտում են ինչպես էլ լինի հաղթանակով դուրս գալ սոցիալիստական մրցությունից և երկրին տալ ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք։ Ահա Երևանի Ալյումինի գործարանի կոլեկտիվը, որը գործի վերածելով ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած պարտավորությունները, այս տարվա առաջին եռամսյակի պլանը կատարեց 105,4 տոկոսով և խնայեց 3 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Նույն գործարանի ֆոլգագլանման ցեխի կոլեկտիվը եռամսյակի պլանը կատարել է 160 տոկոսով։ Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում արտադրության նորարարներն ու գյուտարարները արժանավայել գործերով են դիմավորում ՍՄԿՊ XXII համագումարը։ Նրանք այս տարվա ա-

ռաջին եռամսյակում ներկայացրել են 109 առաջարկություն, որոնց ներդրումով կոմբինատը տասնյակ հազար ռուբլու օգուտ կըստանա։ Կոմբինատում արդեն արտադրության մեջ ներդրվել է մի նոր մեքենա, որ միաժամանակ կատարում է չափման, մաքրման ու խոտանման աշխատանքները և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է կրկնակի չափով։ Նախահամագումարյան սոցիալիստական մրցության մեջ իր համար հաղթանակ է ապահովում Երևանի Ցինկապատ ամանեղենի գործարանի կոլեկտիվը։ Գործարանը ժամկետից շուտ կատարել է 1.256 ավտոմատ կաթնախմոց արտադրելու պատվերը։ Երևանի Հիդրոպոմպերի գործարանի կոլեկտիվը պլանից դուրս թողարկել է ավելի քան 80 պոմպ։

Այժմ ռեսպուբլիկայի բազմաթիվ ձեռնարկությունների կոլեկտիվներ չեն բավարարվում հին պարտավորություններով։ Նրանք նախաձեռնություն են հանդես բերում ՍՄԿՊ XXII համագումարը նոր նվաճումներով դիմավորելու համար։ Երևանի Սարքաշինական գործարանի կոլեկտիվը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի ստանձնել է լրացուցիչ պարտավորություններ։ Օրինակ, կոլեկտիվը խոստացել է տարեկան արտադրական պլանը



կատարել ժամկետից ոչ թե չորս, այլ յոթ օր շուտ, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարել երկուսի փոխարեն երեք տոկոսով, նյութերի տնտեսման հաշվին թողարկել ոչ թե 500, այլ 1500 սարք և այլն։ Տարվա սկզբին Երևանի Լենինի անվան մետաքսի կոմբինատի կոլեկտիվը խոստացել էր պլանից դուրս երկրին տալ 50 հազար մետր գործվածք։ Այժմ կոլեկտիվը վերանայել է իր ստանձնած պարտավորությունը և խոստացել է երկրին տալ 100 հազար մետր գործվածք։

Այժմ, երբ ամբողջ երկրում նոր թափով է ծավալվում նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը, մեծ և պատվավոր խնդիրներ ունեն կատարելու մեր ագիտատորները։ Լինելով պարտիական կազմակերպությունների մարտական օգնականները, նրանք պետք է արտադրության առաջավորների ձեռք բերած հաջողությունները դարձնեն բոլոր բանվորների սեփականությունը, որ բոլորը աշխատեն բարձր արտադրողականությամբ։ Առաջավոր փորձը տարածելու միջոցով մեր ագիտատորները կհասնեն այնպիսի հաջողության, երբ ետ մնացողները կհավասարվեն առաջավորներին։

ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ըս-

տանձնած պարտավորությունները կատարելու գործում կարևորագույն տեղ է գրավում արտադրանքի որակի բարձրացումը։ Ագիտատորը պետք է հետևի, որպեսզի բոլոր ունկընդիրները պայքարեն արտադրանքի բարձր որակի համար, որ ձեռնարկությունը թողարկի միայն գերազանց որակի արտադրանք։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի առաջիկա համագումարը արժանավայել գործերով դիմավորելու շահը պահանջում է, որ ագիտատորները ոչ միայն խրախուսեն ու մասսայական խրախուսանքի ենթարկեն լավագույն աշխատողներին, այլև զրույցների ընթացքում ունկնդիրների ուշադրությունը բևեռեն գոյություն ունեցող թերությունները վերացնելու վրա։

Նոր թափով ծավալենք նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը և ՍՄԿՊ XXII համագումարը դիմավորենք արժանավայել գործերով։



# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ՈՐԱԿՅԱԼ ԱՐՏԱԴՐԱՆՔ

Շուրջ 10 տարի է, ինչ ընկ. Սիրուշ Ասլանյանն աշխատում է Երևանի Բրդյա նուրբ գործվածքեղենի և մահուդի կոմբինատում։ Բոլորը ճանաչում և հարգում են նրան։

— Այսօր անվանի մանածագործուհի Սիրուշը ո՞ր հերթափոխությունում է աշխատում,— դիմում ենք մի երիտասարդ բանվորուհու,— ուզում ենք նրան տեսնել։

— Խնդրեմ գնանք, ես ցույց կտամ, նա այժմ այս հերթափոխությունում է աշխատում։

Մտնում ենք կոմբինատի մանվածքային ցեխը։ Ընդարձակ և լուսավոր ցեխում աշխատում են տասնյակ մանածագործուհիներ։

Մանող մեքենաների աղմուկը տարածվել է ամենուրեք։ Մեքենաների շարքերի միջով քայլում է մի կին, որն ուշադրությամբ հետևում է իլիկների աշխատանքին։ Մանածագործուհու քունքերին և մասնագիտական

հագուստի վրա եղյամի նման նստել են բրդի փոշին և նուրբ թելերի մնացուկները։

Մենք հեռվից դիտում ենք, թե ինչպես բրիգադավար Սիրուշ Ասլանյանը մայրական հոգատարությամբ զրուցում է իր բրիգադայի կենսուրախ աղջիկների հետ և նրանց ցուցումներ ու խորհուրդներ է տալիս։

Նկատելով մեզ, նա մոտենում է և հրճվալից ասում.

— Լավ աղջիկներ են ինձ հետ աշխատում։ Աշխատանքը նրանց համար պատվի գործ է դարձել. ամեն մեկն էլ ուզում է արտադրել ավելի շատ և բարձրորակ մանվածք։

Այո, առաջավոր է Սիրուշ Ասլանյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման արժանացած № 4 բրիգադան։

— Այս բրիգադան,— ասում է կոմբինատի հրահանգչուհի Եվգենիա Զիլինգարյանը,— 1959 թվականի սկզբներին շատ ետ էր մնում։ Բրիգադայի մասին քննադատական խոսքեր էին ասվում ցեխի արտադրական խորհրդակցություններում, կոմերիտական ժողովներում։ Բանը ինչո՞ւմն է, չէ՞ որ նույն մանող մեքենաների վրա մյուս հերթափոխության ժամանակ աշ-



խատում է Սիրուշ Ասլանյանի բրիգադան, որը և առաջավոր է, միշտ էլ կատարում է առաջադրանքներն ու արժանանում գովասանքի։

— Ճիշտ է ասում Եվգենիան,— շարունակում է զրույցը Սիրուշը,— իմ սիրտը ցավում էր, որ իմ մրցակից բրիգադան այդքան ետ էր մնում։ Եվ ահա ինձ օգնության եկավ Վալենտինա Գագանովան։ Նրա հայրենասիրական նախաձեռնության մասին ես կարդացել էի թերթերում, լսել ռադիոյով։ Մտածում էի նրան հետևելու մասին։ Ընկերների հետ զրուցելիս ես ցանկություն հայտնեցի թողնել իմ առաջավոր բրիգադան և աշխատանքի գնալ այդ ետ մնացող տեղամասը ու այն հասցնել առաջավորների։

— Սիրո՛ւշ,— ասում էին ինձ առանձին մարդիկ,— ինչ գործ ունես, չէ՞ որ կպակասի քո աշխատավարձը և, վերջապես, ընկնում ես գլխացավանքի մեջ։

—Ես այդպես չմտածեցի— շարունակում է անվանի մանածագործուհին, գիտեի, որ նոր տեղամասում շատ դժվարություններ կլինեն և ժամանակավորապես նյութական կորուստ կունենամ, բայց դրա փոխարեն

ետ մնացող բրիգադան կդառնա առաջավոր։

Կոմբինատի ղեկավարությունն ընդառաջեց ընկ. Սիրուշ Ասլանյանի ցանկությանը։

— Ինչի՞ց սկսեցիք Ձեր աշխատանքը նոր բրիգադայում,— հարցնում ենք անվանի մանածագործուհի Սիրուշ Ասլանյանին։

Նա խնդրեց մի քիչ սպասել, մինչև աշխատանքի ընդմիջումը։ Աշխատանքի ընդմիջման ժամանակ կանգ առան հաստոցները։ Սիրուշը ցեխի վարիչի առանձնասենյակում հավաքեց իր բրիգադայի աղջիկներին և սկսեց պատմել.

— Ահա այստեղ են իմ բրիգադայի անդամները՝ Թամարա Դավթյանը, Արփիկ Հայրապետյանը, Սվետլանա Ղրչյանը, Անիկ Բաբայանը, Մարգո Սարգսյանը և ուրիշներ։ Բոլորն էլ խելոք, աշխույժ ու ժրաջան աղջիկներ։ Բայց նրանց պակասում էր աշխատանքի հմտությունը, լավ չէին տիրապետում տեխնիկային։ Այո՛, ջահելներ էին, դեռ չգիտեին արտադրությունը, նրանց մեջ պակասում էր պատասխանատվությունը, ընկերասիրությունը և փոխադարձ օգնությունը։

Իմ առաջին քայլը եղավ այն, որ նրանց մեջ աստիճանաբար պատվաստեցի սեր



դեպի աշխատանքը, պատասխանատվության զգացում գործում։ Ո՞վ ուշանում էր, նրա հարցը քննում էինք բրիգադայի ներսում, իսկ ո՞վ հիվանդանում էր, մենք լարում էինք մեր ուժերը, որպեսզի փոխարինենք նրան։

Աղջիկները լավ չէին տիրապետում մանող մեքենաներին, ինչպես ասում են, չգիտեին նրանց լեզուն, հետևապես թելի շատ կտրվածքներ էին տալիս և դա անդրադառնում էր աշխատանքի արտադրողականության վրա, առաջ բերում հումքի կորուստ և բացի այդ, ստացվում էր խոտան մանվածք։

Սկսվեց բրիգադայի անդամների անհատական և կոլեկտիվ ուսուցումը։ Ես միշտ հետևում էի նրանց աշխատանքին և տեղն ու տեղը շտկում նրանց սխալները, օգնում էի և սովորեցնում նրանց։

Ես իմ ամբողջ փորձը, հմտությունն ու գիտելիքները փոխանցում էի մեր աղջիկներին։

Բարձր որակի գործվածք տալու գործում մեծ նշանակություն ունի նաև իլիկների ստուգման կարգը։ Մեքենան ստուգելու երկար ու ավելորդ շարժումները կարող են հոգնեցնել մանածագործուհուն։ Դրա համար

ես սահմանեցի մեքենայի աշխատանքն ստուգելու ավելի լավ ձև։ Որոշակի հերթականությամբ դիտում էի աջ և ձախ կողմում եղած իլիկների աշխատանքը և տեղն ու տեղը վերացնում թերությունները։

Ես իմ ջահելներին սկսեցի սովորեցնել նաև առանց իլիկների պտույտը դադարեցնելու, հենց ընթացքի ժամանակ, թելի կտրվածքները միացնել, այդ պրոցեսը կրճատելով մի քանի վարկյանով։

Պետք է ասեմ, որ արտադրական առաջադրանքները հաջողությամբ կատարելուն նպաստում է մանող մեքենաների հստակ և անխափան աշխատանքը։ Ես դրա վրա մեծ ուշադրություն եմ դարձնում, չէ՞ որ դրանից շատ բան է կախված։ Ուստի մինչև հերթափոխային աշխատանքի սկսվելը՝ ենթավարպետի հետ միասին շտապ կարգավորում, մաքրում և անհրաժեշտության դեպքում յուղում ենք մեքենան, վերացնում թերությունները։ Այսպիսով բանվորուհին այլևս ավելորդ ժամանակ չի կորցնում մեքենան կարգավորելու և առաջին իսկ րոպեներից նա հնարավորություն է ստանում արտադրանք տալ։

Բարձրացնելով բանվորուհիների աշխատանքային կարգապահությունը և պատաս-



խանատվությունը, նրանց զինելով տեխնիկական գիտելիքներով,— տիրապետելով առաջավոր փորձին, բրիգադայի անդամները նախկինում 200 իլիկի փոխարեն սկսեցին սպասարկել 250—300, իսկ առանձին դեպքերում՝ 400 և 600 իլիկ։ Այսպիսով մանողներն սկսեցին աստիճանաբար աշխատել ավելի արտադրողաբար, որի շնորհիվ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, մանվածքի որակը, պակասեցին հումքի կորուստը և խոտանը։

Այդ բոլորի արդյունքը եղավ այն, որ ամիսներից հետո մեր ետ մնացող բրիգադան սկսեց ոչ միայն կատարել, այլև գերակատարել առաջադրանքը և անցավ առաջավորների շարքը։ Պլանների կատարման շնորհիվ 30—40 ռուբլով (նոր դրամով) բարձրացավ բրիգադայի անդամների աշխատավարձը, իսկ իմը՝ 50—55 ռուբլով։ Դա իր հերթին ոգևորեց մեր աշխատողներին։

Մեր բրիգադայի կոլեկտիվն սկսեց համերաշխ և սիրով աշխատել։ Արդեն զգացվում էր բրիգադայի անդամների կոմունիստաբար աշխատելու և ապրելու ցանկությունը։ Եվ ահա մեր բրիգադայի կոլեկտիվն սկսեց պայքարել կոմունիստական աշխատանքի

բրիգադայի պատվավոր կոչման համար։ Նրանք աշխատում էին մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար նշանաբանով։ Հաճախ կազմակերպում էինք կինոնկարների, ներկայացումների կոլեկտիվ դիտումներ, ուրախանում և հանգստանում միասին։

Բրիգադայում և ցեխում ստեղծվեցին ընկերական, բարեկամական և համերաշխ հարաբերություններ։ Այդ ամենը նպաստեց բրիգադայի լավ աշխատանքին։ Դա տվեց իր արդյունքները՝ զգալիորեն գերակատարվեց բրիգադայի արտադրական պլանը, օրական 236 կիլոգրամի փոխարեն երկրին տալով 340—350 կիլոգրամ մանվածք։ Նախատեսված 86 տոկոսի փոխարեն տրվեց 98—99 տոկոս առաջին տեսակի մանվածք և տնտեսվեց 600 կիլոգրամ հումք։

Այս օրերին, երբ մեր երկրի աշխատավորները արժանավայել նվերներով են դիմավորում հարազատ պարտիայի XXII համագումարը՝ Սիրուշ Ասլանյանը և նրա ղեկավարած կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած բրիգադայի կոլեկտիվը պայքարում են մեր պարտիայի ու ժողովրդի կյանքի այդ կարևոր իրադարձությունը դիմավորելու տարեկան առաջադրանքը գերակատարած։

Ֆր. ՄԱՐՈՒԹՅԱՆ





# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Բարեկամություն բառը բոլորի համար հարազատ է ու նվիրական։ Այնտեղ, որտեղ բարեկամություն չկա, մարդ չի կարող իրեն երջանիկ զգալ։

Ագիտատորը ժողովուրդների բարեկամության մասին զրույց անցկացնելիս ունկնդիրներին պարզաբանում է, որ ազգային հարցի վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերում և մեր պարտիայի մի շարք փաստաթղթերում բազմակողմանիորեն ցույց է տրված ժողովուրդների հավերժ բարեկամության ու եղբայրության խիստ անհրաժեշտությունը։ Դարեր շարունակ աշխատավորները երազել են ապրել բարեկամության, եղբայրության և բարի-դրացիական հարաբերությունների մեջ։

Կոմունիստական պարտիան անդադրում հոգ է տարել և տանում է, որպեսզի է՛լ ավելի ամրապնդվեն Սովետական Միության ժողովուրդների բարեկամական և եղբայրա-

կան կապերը, որոնք Սովետական պետության հզորության ամուր հիմքն են։

«Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թվականի հունվարի 9-ի որոշման մեջ ասված է. «Պարտիական կազմակերպություններն ու կոմիտեները պետք է պրոպագանդիստական աշխատանքում խստիվ հաշվի առնեն մեր երկրի բնակչության տարբեր խավերի ազգային առանձնահատկությունները, գլխավոր շեշտը դնելով աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության, ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման, սոցիալիստական ազգերի անշեղ մերձեցման և նրանց բազմակողմանի փոխադարձ հարստացման վրա։ Անհրաժեշտ է անհաշտ պայքար մղել բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների, անցյալի իդեալականացման ու սոցիալական հակասությունների սքողման, այս կամ այն ազգի իսկական պատմությունը և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների հետ նրա փոխհարաբերությունները աղավաղելու տենդենցների դեմ, ազգային սահմանափակվածության և բացառիկության առանձին դրսևորումների դեմ»։

Ուստի ագիտատորը հաճախակի պետք է ունկնդիրներին մանրամասնորեն պարզա-



բանի, թե ինչպիսի խոշոր դեր է խաղացել Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը մեր մեծ երկրի ծաղկման ու բարգավաճման գործում։ Դրա հետ միաժամանակ պետք է պարզաբանել, թե ինչպես ռուսական առաջադիմական կուլտուրան բարերար ազդեցություն է գործել սովետական ժողովուրդների կուլտուրայի վրա և այն պատմական դերը, որ խաղացել է ռուս մեծ ժողովուրդը Հայաստանում և եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում սոցիալիստական շինարարության հաղթանակի ու ժողովրդական տնտեսության բնագավառներում ձեռք բերած նվաճումների գործում։

Զրույցի ընթացքում ագիտատորը ունկընդիրներին պետք է պատմի նաև Բաքվի 26 կոմիսարների մասին, որոնք եղել են մեր երկրի ժողովուրդների նվիրական բարեկամության, Բաքվի և Անդրկովկասի պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնության սիմվոլը։

Ադրբեջանում Սովետական իշխանության հաստատվելու 40-ամյակի առթիվ 1960 թվականի ապրիլի 25-ին Բաքվում հրավիրված հանդիսավոր նիստում ընկ. Ն. Ս. Խրուշչովը ասել է.

«Կուզենայի ընդգծել Ադրբեջանի և ամբողջ Անդրկովկասի կոմունիստական կազ-

մակերպությունների հրաշալի ինտերնացիոնալիստական տրադիցիաները։

Լենինը բազմիցս ընդգծել է Անդրկովկասի բոլշևիկների ինտերնացիոնալիզմը և այն որպես օրինակ մատնացույց է արել պարտիայի մյուս կազմակերպություններին»։

ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության մասին խոսելիս ագիտատորը ունկնդիրներին պարզաբանում է, որ Սովետական իշխանության տարիներին Անդրկովկասի երեք ռեսպուբլիկաները վիթխարի նվաճումներ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր բնագավառներում։ Եղբայրական այդ ռեսպուբլիկաների միջև գնալով է՛լ ավելի ծավալվող փոխադարձ կապը դաստիարակչական շատ մեծ դեր է խաղացել և նպաստել է ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը։

Հայ, վրացի և ադրբեջանական ժողովուրդների անխախտ բարեկամությունը, սերտ համագործակցությունն ու եղբայրական կապերը վերջին տարիներին է՛լ ավելի են ամրապնդվել։ Ադրբեջանից դեպի Թբիլիսի և Երևան ձգվող գազամուղի ու բարձրավոլտ էլեկտրական գծի շահագործման հանձնումը ժողովուրդների բարեկամության նոր, փայլուն ապացույց է։ Այժմ Հայաստանի և Վրաստանի մայրաքաղաքները գազ են ստա-



նում այն խողովակներով, որոնց պատրաստման մեջ մասնակցել են ռուսները, ուկրաինացիները, հայերը, վրացիները, ադրբեջանցիները և ուրիշ ժողովուրդներ։ Աշխատավորներն այս գազամուղն անվանել են «Բարեկամության գազամուղ», իսկ էլեկտրական գծերը՝ «Բարեկամության գիծ»։ Շամշադինի և Իջևանի շրջաններում աշխատավորների տներում վառվող էլեկտրական լամպերը իրենց լույսն ստանում են Մինգեչաուրից։ Նախիջևանի Ավտոնոմ Սոցիալիստական Ռեսպուբլիկայի քաղաքները և շատ գյուղեր էլեկտրական լույս են ստանում Սևանից։

Անցյալ տարի Շամշադինի և Իջևանի շրջանների աշխատավորներից 1000—1500 հոգի բերքահավաքի ժամանակ օգնեցին Ղազախի և Թովուզի շրջանների կոլտնտեսություններին՝ բամբակը ժամանակին հավաքելու համար։

Վ. Ի. Լենինը 1920 թվականի դեկտեմբերի 2-ին Հայաստանի Հեղկոմի նախագահ ընկեր Կասյանին այսպիսի մի հեռագիր է ուղարկել.

«Հանձին Ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Չեմ կասկածում, որ դուք կգործադրեք բոլոր ջանքե-

րը՝ Հայաստանի, ...,Ադրբեջանի աշխատավորների միջև եղբայրական համերաշխություն հաստատելու համար»։

Հանճարեղ Լենինի այս ցանկությունը մեր ժամանակներում իրականություն է դարձել։ Անցյալում ստեղծված բարեկամությունը մեր շրջանում վեր է ածվել անկեղծ եղբայրության։

Խոսելով ժողովուրդների բարեկամության մասին, ագիտատորն ունկնդիրներին պարզաբանում է նաև այն, որ ՍՍՌՄ ժողովուրդների միջև անխախտ բարեկամությունը իր արտահայտությունն է գտել սոցիալիստական ազգերի փոխադարձ օգնության, կոմունիստական շինարարության խնդիրների կատարման, ռեսպուբլիկաների, շրջանների, գործարանների և ֆաբրիկաների, կոլտնտեսությունների և սովխոզների միջև սոցմրցման ու փորձի փոխանակման հետագա ծավալման մեջ։ Քութայիսի, Լենինական և Կիրովաբադ քաղաքների արդյունաբերական հիմնարկների աշխատողները, Ղուկասյան—Բոգդանովկա, Իջևան—Ղազախ, Հոկտեմբերյան—Մախարաձե, Մեղրի—Օրդուբադ, Գորիս—Լաչին և ուրիշ շրջանների գյուղատնտեսության աշխատավորները մրցում են իրար հետ։

Նախիջևանի Շահբուզի շրջանի Բաղամլու



գյուղի կոլտնտեսությունը սերտ կապ ունի Ազիզբեկովի շրջանի Բարձրունի գյուղի կոլտնտեսության հետ։ Նրանց մրցությունը արդեն տրադիցիա է դարձել։ Երկու գյուղերի կոլտնտեսությունները միմյանց օգնում են գյուղատնտեսության բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստանալու համար։ Նրանք միմյանց են հաղորդում իրենց առաջավոր փորձը, օգնում են՝ այն արտադրության մեջ կիրառելու համար։ Վերջին տարիներս Բաղամլու գյուղի կոլտնտեսականները իրենց կոլտնտեսության խաղողի տեսակներից Բարձրունի գյուղում գցել են 25 հեկտար խաղողի այգի, դրանով արմատավորել խաղողագործությունը Բարձրունի գյուղի կոլտնտեսությունում, իսկ բարձրունցիները անցյալ տարի բաղամլեցիներին սովորեցրել են ծխախոտի մշակությունը և իրենց ուժերով մշակել 5 հեկտար ծխախոտի պլանտացիա։

Հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամության մասին խոսելիս անհրաժեշտ է կանգ առնել այն բանի վրա, որ այդ երկու ժողովուրդները պատմականորեն եղել են անկեղծ բարեկամներ և բարի հարևաններ, խորը հարգանք են տածել մեկը մյուսի գրականությանը, կուլտուրային և արվես-

տին, համատեղ պայքար են մղել ընդհանուր թշնամու դեմ և հարազատ եղբոր նման պաշտպանել իրար։

ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության մասին խոսելիս ագիտատորն ավելի շատ օրինակներ է բերում առօրյա կյանքից, երբ մեր ժողովուրդների մեջ բարեկամական այնպիսի ամուր կապեր են ստեղծվել, որպիսին անցյալում տեսնել հնարավոր չէր։

Զրույցի վերջում ագիտատորն իր ունկնդիրներին պարզաբանում է, որ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ժողովուրդների հարաբերությունները կառուցված են բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության հիմքերի վրա, այնինչ, իմպերիալիստական պետություններում, հատկապես ԱՄՆ-ում իշխում է մարդատյացության իդեոլոգիան, ցեղային ատելության քաղաքականությունը, այլ ազգերի նկատմամբ բռնություն գործադրելու քաղաքականությունը։ ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները նեգրերի, մեքսիկացիների, կուբայացիների, իռլանդացիների և մյուս ազգերի նկատմամբ ւցված են ոխակալությամբ։

Մ. ԲԱՅՐԱՄՈՎ

—.—



# ՕՊԵՐԱՅԻ ԵՎ ԲԱԼԵՏԻ ԹԱՏՐՈՆԸ

Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի ու բալետի պետական ակադեմիական, Լենինի շքանշանակիր թատրոնը ռեսպուբլիկայի ամենաերիտասարդ թատրոններից մեկն է։ Նա իր գոյությունն սկսել է 1932 թվականի մայիսից, սակայն նրա հիմնադրման օրն ընդունված է համարել 1933 թվականի հունվարի 20-ը, այսինքն անդրանիկ ներկայացման օրը, երբ առաջին անգամ հայերեն հնչեց Ալեքսանդր Սպենդիարյանի «Ալմաստ» օպերան։ Չնայած բեմադրության բարդությանը, երևանցի հանդիսականները ջերմորեն ընդունեցին այն, և այդ օրվանից սկսած՝ օպերան թատրոնի խաղացանկի մշտական զարդը դարձավ։

Իր գոյության առաջին հինգ տարում թատրոնը վիթխարի աշխատանք կատարեց օպերայի և բալետային ներկայացումներ պատրաստելու ուղղությամբ։ Բավական է ասել, որ նրա խաղացանկում արդեն կային քսաներեք երաժշտական երկեր։ Այդ ժամանակներին է վերաբերում Արմեն Տիգրանյանի

«Անուշ» օպերայի բեմադրությունը, որից մինչև այդ միայն առանձին հատվածներ էին ներկայացվել։ «Անուշը» հսկայական հաջողություն ունեցավ և դարձավ հայ ժողովրդի առավել սիրված օպերան։ Դժվար թե Հայաստանում լինի այնպիսի մեկը, որ չիմանա Սարոյի և Անուշի ողբերգական սիրո պատմությունը, ունկնդրած չլինի այդ հոգեպարար օպերայի հուզաթաթավ արիաները։ Օպերայի ծավալուն մասսայականության պերճախոս վկայությունն է թեկուզ այն փաստը, որ «Անուշի» երաժշտական շատ դրվագներ սիրված երգեր են դարձել ժողովրդի շրջանում։ Օպերայի այդ ժողովրդականացման մեջ վիթխարի է Ալ. Սպենդիարյանի անվան թատրոնի ծառայությունը։ Չէ՞ որ թատրոնը հանդիսականի համար «Անուշը» ներկայացրել է արդեն ավելի քան յոթ հարյուր անգամ։

Թատրոնը ստեղծագործական մեծ վերելք ապրեց հայկական արվեստի Մոսկվայի առաջին տասնօրյակին նախապատրաստվելու շրջանում։

Մոսկվայում թատրոնը ներկայացրեց «Ալմաստ», «Անուշ», «Լուսաբացին» օպերաները և «Երջանկություն» բալետը, որը հատկապես տասնօրյակի համար գրել էր Ա. Խաչատրյանը։



Տասնօրյակից հետո թատրոնի կյանքում նոր էտապ դարձավ ձեռք բերված հաջողությունների ամրապնդումը և նոր խաղացանկի յուրացումը. այն է՝ հայկական երաժշտական կուլտուրայի զարգացումը, ռուսական ու եվրոպական երաժշտական կլասիկների բեմադրությունները, բալետային արվեստի զարգացումը, մանկական օպերաների, եղբայրական ռեսպուբլիկաների օպերաների ներկայացումները, ազգային նոր, ինքնատիպ օպերաների և բալետների ստեղծումը։

Թատրոնի հետագա աշխատանքը պետք է ծավալվեր, ելակետ ունենալով տասնօրյակից հետո նրան առաջադրվող պահանջները։ Դա կարևոր էր մանավանդ նրանով, որ Մոսկվայից վերադառնալուց հետո թատրոնը գործել սկսեց նոր շենքում։ Նոր շենք գնալու օրը և նրա բեմում առաջին ներկայացումը (1940 թվականի հունվարի 12-ին) տոն էր թատրոնի կոլեկտիվի համար։

Տասնօրյակից հետո մինչև Հայրենական Մեծ պատերազմի սկսվելը թատրոնը բեմադրեց երաժշտական արվեստի այնպիսի գոհարներ, ինչպիսիք են Բիզեի «Կարմեն», Վերդիի «Աիդա», Պ. Չայկովսկու «Պիկովայա դամա», Ռիմսկի-Կորսակովի «Թագավորի հարսնացուն» օպերաները։

Հայրենական պատերազմի տարիներին թատրոնը բեմ հանեց օպերային տասնչորս նոր երկեր։ Նույն ժամանակաշրջանում նա մեծ աշխատանք կատարեց եղբայրական ռեսպուբլիկաների ազգային օպերաների բեմադրության համար, հաջողությամբ ներկայացնելով Զ. Փալիաշվիլու «Դաիսի» և Ու. Հաջիբեկովի «Քյոռ-Օղլի» օպերաները։ Այդ տարիներին թատրոնը շեֆական մեծ աշխատանք էր կատարում զինվորների շըրջանում։ Զորամասերի և հոսպիտալների լավագույն սպասարկման համար կազմակերպվել էին 10—12 մարդուց բաղկացած բրիգադաներ, որոնց կազմի մեջ մտնում էին վոկալիստներ, երգչախմբի, բալետի արտիստներ, նվագախմբի երաժիշտներ։ Օպերայի արտիստները տվել են 1.278 շեֆական համերգ։

Հետպատերազմյան տարիներին Ալ. Սպենդիարյանի անվան թատրոնը հաջողությամբ աշխատեց գեղարվեստական բարձրարժեք ներկայացումներ կերտելու համար։ Միայն 1949 թվականին թատրոնը բեմադրեց ռուսական կլասիկ այնպիսի երկեր, ինչպիսիք «Իշխան Իգոր» և «Մազեպա» օպերաները, սովետական կոմպոզիտորների ստեղծագործություններից «Բժիշկ Այբոլիտը», «Պղնձե հեծյալը» և այլն։



Թատրոնի ստեղծագործական կյանքում, ինչպես ամբողջ ռեսպուբլիկայի կյանքում, մեծ իրադարձություն եղավ 1956 թվականի հունիսին Մոսկվայում կայացած հայկական արվեստի երկրորդ տասնօրյակը։ Թատրոնը տասնօրյակի գնաց հինգ բեմադրություններով, նրա խաղացանկն ընդգրկում էր «Անուշ», «Դավիթ-բեկ», «Արշակ երկրորդ», «Պիկովայա դամա» օպերաները և «Սևան» բալետը։ Այդ ստեղծագործությունների մեծ մասը ներկայացվեց նոր բեմադրությամբ և հսկայական հաջողություն գտավ հանդիսականների շրջանում, արժանացավ կենտրոնական մամուլի դրական գնահատականին։

Տասնօրյակում մեծ հաջողություն ունեցավ Տիգրան Չուխաջյանի «Արշակ երկրորդ» պատմական օպերան։ «Արշակ երկրորդ» օպերան բեմական շատ արտակարգ ճակատագիր է ունեցել։ Կենդանության օրոք նրա հեղինակին այնպես էլ չվիճակվեց ունկնդրել իր ամբողջ ստեղծագործության կատարումը։ Երկար տարիներ այն կորած էր համարվում, իսկ հետո պատահականորեն գտնվեց և խմբագրվեց սովետական կոմպոզիտորների կողմից։ Մեր ռեսպուբլիկայում այդ օպերայի առաջին բեմականացումը տեղի ու-

նեցավ 1945 թվականին և արժանացավ հավանության։

Տասնօրյակում ներկայացված գործերի թվումն էր նաև «Պիկովայա դամա» օպերան։ Չայկովսկու՝ բեմադրության տեսակետից այդ անչափ դժվարին օպերան, որ ընտրվել էր Մոսկվայի խստապահանջ հանդիսականին ներկայացնելու համար, ինքնին վկայում է թատրոնի երաժշտական ու բեմական բարձր կուլտուրայի մասին, գեղարվեստական ամենախրթին խնդիրները ինքնուրույնաբար լուծելու, իր ստեղծագործական սկզբունքները համարձակորեն պաշտպանելու հնարավորությունների մասին։

Մոսկվայի տասնօրյակում թատրոնը ներկայացրեց նաև Գ. Եղիազարյանի «Սևան» բալետը, որի նյութն առնված է հայ ժողովրդի այսօրվա կյանքից։ Այդ ներկայացման մասին ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Գալինա Ուլանովան գրեց, որ «Սևանը» բալետային ժանրում նոր թեմայի լուծման անդուլ որոնումների վկայությունն է. մեր առջև է խորեոգրաֆիկ այնպիսի ներկայացում ստեղծելու խիստ հետաքրքրական աշխատանքի էտապներից մեկը, որի հերոսները մեր ժամանակակիցներն են՝ իրենց զգացումներով, մտորումներով, ձգտումներով, իրենց «այսօրվա» ուրախություններով ու տխրություններով»։



Ալ. Սպենդիարյանի անվան թատրոնը տասնօրյակում փայլուն կերպով դրսևորեց իր վարպետությունը, իր ստեղծագործական ինքնատիպությունը։ Այդ են վկայում երկրի թատերական-երաժշտական հասարակայնության հայտնած կարծիքները, արտիստներից շատերի ստացած բարձր պարգևները։ Տասնօրյակից հետո թատրոնը նվաճեց ակադեմիական թատրոնի բարձր կոչումը։ Դերասաններից երկուսը՝ Գոհար Գասպարյանն ու Տաթևիկ Սազանդարյանը, և թատրոնի գլխավոր դիրիժոր Միքայել Թավրիզյանը արժանացան ՍՍՌՄ ժողովրդական արտիստի պատվավոր կոչման։

Մոսկվայում հաջող ելույթից հետո թատրոնի առջև դրվեց անչափ պատվավոր մի խնդիր՝ ռեսպուբլիկայի աշխատավորներին ավելի մոտիկից ծանոթացնել օպերային արվեստին։ Թատրոնի կոլեկտիվը և ստեղծագործական առանձին խմբերը գաստրոլների մեկնեցին Հայաստանի քաղաքներն ու շրջանային կենտրոնները։ Վերջին տարիների ընթացքում թատրոնը հաջողությամբ գաստրոլներ ունեցավ նաև Լենինգրադում, Սոչիում, Թբիլիսիում, Բաքվում։

Ազգային խաղացանկի համալրումն ու հարստացումը միշտ եղել և մնում է թատրոնի կարևորագույն խնդիրը։ Թատրոնի գեղարվեստական ղեկավարությունը Հայաստանի կոմպոզիտորների Միության ստեղծագործական համագործակցությամբ վերջին տարիներս շատ բան է արել օպերային ու բալետային նոր երկեր ստեղծագործելու համար։ Այդ միացյալ ջանքերը լավ արդյունքներ են տվել։ Թատրոնի խաղացանկը զգալիորեն համալրվել է հայ կոմպոզիտորների ստեղծագործություններով՝ Ա. Բաբաևի «Արծվաբերդ», Վ. Տիգրանյանի «Սոս և Վարդիթեր» օպերաներով, Է. Հովհաննիսյանի «Մարմար» բալետով և այլն։

Թատրոնը մեծ աշխատանք կատարեց Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակին նախապատրաստվելու ժամանակ։ Նոյեմբերյան օրերին թատրոնի կոլեկտիվն ավարտեց կոմպոզիտոր Գ. Արմենյանի «Խաչատուր Աբովյան» ազգային նոր օպերայի բեմադրության աշխատանքը։ Հայ ժողովրդի պանծալի տարեթվին նվիրվեցին նաև Ն. Ստեփանյանի «Լուսաբացին» օպերայի նոր բեմադրությունը և Ա. Խաչատրյանի «Սպարտակ» հիանալի բալետը, որը դարձել է երևանցի



հանդիսականների սիրած ներկայացումներից մեկը։

Դժվար է մեկ առ մեկ հիշատակել թատրոնի խաղացանկի ընդգրկած բոլոր ներկայացումները։ Բավական է ասել, որ միայն վերջին տարիներս թատրոնը իրագործեց «Տրուբադուր», «Տրավիատա», «Ֆաուստ» «Գյուղական պատիվ», «Դիմակահանդես», «Պայացներ», «Օթելլո» և այլ օպերաների բեմադրությունը։ Մենակատարների, երգչախմբի և նվագախմբի կատարողական բարձր վարպետությունը Երևանի օպերայի ու բալետի թատրոնը դարձրել է երկրի ամենահամբավավոր երաժշտական կոլեկտիվներից մեկը։ Թատրոնի հռչակը տարածվել է մեր Հայրենիքի սահմաններից դուրս։ Ներկայումս թատրոնն ունի հիանալի կոլեկտիվ, որն ընդունակ է լուծելու ստեղծագործական ամենաբարդ խնդիրները, որոնցից ամենապատվավորը օպերային արվեստը ժողովրդի հոծ զանգվածներին մոտեցնելն է։

Թ. ՊԱՊՅԱՆ

# ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹՅՈՒՆԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՉԱՐԻՔՆ Է

*Շատ կապիտալիստական երկրներում աճում է մասսայական գործազրկությունը։ Միլիոնավոր մարդիկ Ամերիկայում, Եվրոպայում և Ասիայում մնացել են առանց գոյության միջոցների, առանց ապագայի հեռանկարների։ «Կորսված միլիոններ»— վերջերս այսպես բնորոշեց «Նյու-Յորք պոստը» գործազուրկների դրությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներում։*

## ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՄՇՏԱԿԱՆ ՈՒՂԵԿԻՑԸ

Կապիտալիստական արտադրության զարգացմամբ տեղի է ունենում կապիտալի կուտակում, արտադրության միջոցների մի խումբ տիրողների հարստացում։ Կապիտալիստները հնարավորություն են ստանում իրենց կապիտալի մեծ մասը ծախսել մեքենաներ և սարքավորումներ ձեռք բերելու համար։ Բանվորների վարձման վրա կատարվող ծախսերին համապատասխան իջնում է



աշխատավարձի վճարման չափը։ Կապիտալիզմի արշալույսին, երբ տեխնիկան համեմատաբար բարձր չէր, ձեռնարկատերը բանվորական ուժի վճարման համար ծախսում էր ավանսավորված կապիտալի մոտավորապես՝ 80—90 տոկոսը և միայն 10—20 տոկոսը՝ արտադրամիջոցների գնման համար։ Իսկ այժմ տեխնիկական պրոգրեսի հետևանքով կապիտալի 80—90 տոկոսը ծախսվում է արտադրամիջոցների վրա և միայն 10—20 տոկոսը՝ բանվորական ուժի վճարման վրա։ Հետևապես, կապիտալի կուտակման և տեխնիկական պրոգրեսի համապատասխան բանվորական ձեռքի հարաբերական պահանջը կրճատվում է։ Դրա հետևանքով բանվորների զգալի մասը չի կարողանում կիրառել իր աշխատանքը և արտադրական փորձը, իր գիտելիքները և ընդունակությունները։

Գործազրկությունը արտադրության կապիտալիստական եղանակի անխուսափելի ուղեկիցն է, նրա անբուժելի հիվանդությունը։ Գերշահույթների մրցավազքում կապիտալիստները ձգտում են կրճատել արտադրության ծախսերը, աշխատավարձի տեղեկագրերից ջնջել որքան հնարավոր է շատ մարդկանց։ Դրա համար էլ կապիտալիզմի ժամանակ աշխատավորների մի մասը դատա-

պարտված է ուժասպառ աշխատանքի, իսկ մյուսը՝ գործազրկության։ Գործազուրկների բանակը տենդենց ունի հետագա աճման։ Այսպես, 1957 թվականի հունվարից մինչև 1959 թվականի հունվարը ԱՄՆ-ի տեքստիլ արդյունաբերության արտադրական բանվորների թիվը կրճատվել է 80 հազարով։ Եվ դա արտադրության ծավալի միաժամանակյա աճի դեպքում։ Այդպիսի պատկեր գոյություն ունի նաև մետաղամշակման, քիմիական, սննդի և արդյունաբերության այլ բնագավառներում։ Եթե ԱՄՆ-ի արդյունաբերության մեջ արտադրության ավտոմատացումը հասնի իր մաքսիմում զարգացմանը, ապա, համաձայն ամերիկյան «Օտոմետիկ կոնտրոլ» ամսագրի տվյալների, աշխատանքից հեռացված և զբաղված բանվորների հարաբերությունը կկազմեր 100:1։

## ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹՅԱՆ ԿՈՐԱԳԻԾԸ ՎԵՐ Է ԲԱՐՁՐԱՆՈՒՄ

XX դարի սկզբից ԱՄՆ-ը վեր է ածվել խրոնիկական գործազրկության երկրի։ 1900—1958 թվականն ընկած ժամանակաշրջանում այստեղ միջին թվով տարեկան հաշվվում են 3.455 հազար լրիվ գործազուրկներ։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում հաստատվել է հիմնական, ընդ որում



անընդհատ աճող գործազրկություն։ «Մենք, ըստ երևույթին, կապրենք գործազրկության հաստատուն մեծացման երկարատև ժամանակաշրջան,— գրում է «Նյուրիպաբլիկ» ամսագիրը,— 1951—1953 թվականներից հետո գործազուրկների թիվը հասավ մոտավորապես 2 միլիոն մարդու։ 1955—1957 թթ. ժամանակաշրջանում կային մոտ 3 միլիոն գործազուրկներ, 1959—1960 թվականներին՝ մոտ 4 միլիոն։ Մենք անզգա ենք դարձել այն բանի նկատմամբ, որը Միացյալ Նահանգներում վեր է ածվել ընդհանուր վիճակի»։

«Ավելորդ» ամերիկացիների բանակը շարունակում է աճել։ Ինչպես մարտի 7-ին հայտարարել է ԱՄՆ-ի աշխատանքի մինիստր Գոլդբերգը, միայն փետրվար ամսում լրիվ գործազուրկների թիվը ավելացել է 320.000-ով և հասել է 5.705 հազար մարդու. դա գործազրկության ամենաբարձր մակարդակն է 1941 թվականի ամառվանից հետո։ Գործազրկության ալիքն ամենից առաջ մտրակել է Ամերիկայի խոշոր արդյունաբերական կենտրոններին՝ Դետրոյտին, Կանզաս Սիտիին, Կլիվլենդին, Լոս-Անջելոսին, Նյու-Յորքին, Պիտսբուրգին, Սենտ-Լուիսին, Ֆիլադելֆիային, Չիկագոյին։ Երկրի 150 գլխավոր արդյունաբերական կենտրոնների

կեսից ավելին դասվում են «աղքատացող շրջանների» կատեգորիային։

Այդ կոնտինենտի մյուս կապիտալիստական երկրում՝ Կանադայում, գործազուրկների թիվը հունվարի վերջին հասել է 693 հազարի, որը կազմում է երկրի ամբողջ բանվորների 10,8 տոկոսը։ «Դա,— հայտարարել է Կանադայի լիբերալ պարտիայի լիդեր Լ. Պիրսոնը,— գործազրկության ամենաբարձր մակարդակն է 20 տարվա ընթացքում...»։

Իտալիայում գործազրկությունը երկար տարիների ընթացքում պահպանվում է երկու միլիոն մարդու մակարդակին։ Կառավարությունը որոշել է ստեղծված դրությունն ուղղել աշխատավորների էմիգրացիայի միջոցով։ Միայն 1960 թվականին մոտ կես միլիոն իտալացիներ աշխատանք և հաց փնտրելու համար ստիպված էին թողնել իրենց երկիրը։ Բայց և այնպես, չնայած կառավարության բոլոր «ջանքերին», գործազրկությունը Իտալիայում մնում է մոտավորապես միևնույն մակարդակի վրա։ Նույնիսկ աշխատանքի մինիստրության պաշտոնական տվյալներով անցյալ տարվա վերջին երկրում աշխատանք չուներ 1.700 հազար մարդ։

Հունաստանում գործազուրկների բանակը



հասել է 275 հազարի, Իսպանիայում նրանց թիվը հասել է 300 հազարի, և միլիոնավոր մարդիկ զբաղված են ոչ լրիվ աշխատանքային օրով։ Գործազրկությունը անհավատալի մեծ չափերի է հասել Ճապոնիայում։ Ըստ երկրի պրոֆմիությունների գլխավոր խորհրդի հաշվումների՝ արդեն մի քանի տարի անընդհատ գործազուրկների և կիսագործազուրկների թիվը կազմում է 10 միլիոն մարդ։ Վերջերս ճապոնական կառավարությունը որոշում ընդունեց պետական երկաթուղու 40 տարեկանի հասած բանվորներին աշխատանքից ազատելու մասին։ Համաձայն ածխահանքերի «ռացիոնալիզացիայի» նոր պլանների՝ նախատեսվում է ածխահատների կրճատում։ Մի շարք երկրներում գործազրկությունը խորանում է արտադրության ճգնաժամային անկման հետևանքով։ Ամերիկայում, օրինակ, գործարար ակտիվության բարոմետրի սլաքը անշեղորեն իջնում է ցած։ Անցյալ տարվա ամառվանից արդյունաբերական արտադրությունը կրճատվել է ավելի քան 7 տոկոսով։ Պողպատաձուլական արդյունաբերությունն աշխատում է իր հզորության մոտավորապես կեսի չափով։ Ավտոմոբիլային արտադրությունը 1961 թվականի առաջին երկու ամիսների ընթացքում, համե-

մատած անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի հետ, կրճատվել է 43 տոկոսով։ Տնտեսական քաղաքականության ԱՖՏ—ԿՊՊ հարցերի գծով կոմիտեն հայտարարել է, որ եթե եկող տարում արտադրությունը մնա այժմյան ցածր մակարդակի վրա, ապա լրիվ գործազուրկների թիվը կավելանա 8 միլիոնով։

## ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՂԲԵՐԳՈՒԹՅՈՒՆ Է

Ճիշտ է, մի շարք կապիտալիստական երկըրներում, այդ թվում ԱՄՆ-ում, գործազուրկներն ստանում են գործազրկության հատուկ նպաստ, որը բուրժուական պրոպագանդիստների կողմից ներկայացվում է որպես մեծ բարերարություն բանվորների համար։ Բայց, «գործազրկության ժամանակակից նպաստները,— նշում է ամերիկյան առաջադեմ տնտեսագետ Խ. Լյումերը,— լրիվ անբավարար են, որպեսզի ապահովեն գործազուրկի գոնե մինիմալ կարիքները»։ Բայց և այնպես գործազրկության այդպիսի նըպաստներն էլ բուրժուազիայի բարերարությունը չէ, այլ բանվորների նվաճումն է, որ ձեռք է բերվել շահագործողների դեմ համառ պայքարի հետևանքով։

Ներկայումս ԱՄՆ-ում նպաստի միջին չա-



փը հասնում է շաբաթական 30 դոլարի, որը կազմում է ապահովագրման սիստեմում ընդգրկված բանվորների միջին շաբաթական աշխատավարձի 36,3 տոկոսը։ Դա համարյա չորս անգամ քիչ է, քան Գելլերի կոմիտեի հաշվումներով անհրաժեշտ է համեստ կյանք վարելու համար։ Հաճախ նպաստի չափը ցածր է լինում միջինից։ Այսպես, Իլլինոյսի և Նյու-Յորքի նահանգներում գործազրկության նպաստ շաբաթական տրվում է 10, իսկ Կանզասի նահանգում նույնիսկ մինչև 5 դոլար։ Այդ չնչին նպաստը տրվում է սահմանափակ ժամանակաշրջանում, ինչպես վերջերս հաղորդել է «Վաշինգտոն պոստ էնդ Թայմս հերալդը»,— միջինը միայն 12,5 շաբաթվա ընթացքում։ Յուրաքանչյուր նահանգ նշանակում է նպաստի վճարման իր ժամկետը։ Ինդիանայի նահանգում մինիմալ ժամկետը կազմում է 6 շաբաթ, Միչիգանի նահանգում՝ 9, Օհայոյի նահանգում՝ 10 շաբաթ։

Բայց այդ խղճուկ նպաստներն էլ ստանում են ոչ բոլոր գործազուրկները։ Բուրժուական պետական ապարատը դնում է ամեն տեսակ արգելքներ։ Նպաստ չի տրվում մինչև աշխատանքից ազատվելը ոչ լրիվ աշխատանքային օրով կամ ոչ լրիվ աշխատան-

քային շաբաթով զբաղվածներին, ինչպես և պատահական աշխատավարձ ունեցողներին։ Մի շարք նահանգներում նպաստից զրկվում են այն մարդիկ, որոնք մինչև աշխատանքից զրկվելը որոշակի ժամանակաշրջանում չեն ապրել տվյալ նահանգում, կամ որոնք չունեն արտադրական անընդհատ որոշակի ստաժ։ Տասը տարվա ընթացքում, 1950—1959 թվականներին, ըստ պաշտոնական տվյալների, նպաստ չի ստացել գործազուրկների 41—53 տոկոսը։ Այսպիսով, աշխատանքից զրկված ամերիկացիների կեսը անմիջապես գտնվում է կարիքի ճիրաններում։ Գործազուրկների բանակի շատ ջոկատներ ԱՄՆ-ում արդեն վաղուց սպառել են գործազրկության նպաստը. նրանց ամեն օր ավելանում են 7 հազար ընտանիքներ։

Ինչպե՞ս են ապրում գործազուրկները օվկիանոսից այն կողմում։

Վերջերս ամերիկյան «Վաշինգտոն պոստ էնդ Թայմս հերալդ» թերթը պատմել է գործազուրկների ընտանիքների վիճակի մասին։ Վաշինգտոնին մոտ ապրող Ջիմ Ուիլսոնը, ասվում է թերթում, տանը չունի ոչ փող, ոչ ուտելիք և ոչ մի հեռանկար՝ աշխատանք ստանալու համար։ Բայց դրա փոխարեն նա



ունի հսկայական չափի պարտքեր։ Երկու տարի առաջ «Ֆեյրչայլդ» կոմպանիան աշխատանքից ազատեց Ուիլսոնին։ Այդ ժամանակվանից հետո նա աշխատել է 7 ամիս, իսկ ունի չորս երեխաներ։

«Որտեղ էլ որ դուք գնաք,— հայտարարում է Ուիլսոնը,— ոչ ոք չի ուզում օգնել։ Դիմել եմ սոցիալական ապահովության օրգաններին։ Այնտեղ ինձ ասացին, որ պետք է ունենալ հաշմանդամության կարգ։ Ես ասում եմ. «Տեր աստված, դե, ես ի՞նչ կարող եմ անել։ Ես կարող եմ աշխատել, ես ուզում եմ աշխատել, բայց աշխատանք չկա»։

Սան-Բերնարդինո քաղաքից (Կալիֆորնիայի նահանգ) 35-ամյա գործազուրկ Ռոբերտ Բարկերը անգլիական «Դեյլի մեյլ» թերթի թղթակցին հայտարարել է. «Բանվորների կարիք ոչ մի տեղ չկա։ Ես պատրաստ եմ ամեն ինչ անել. ջրանցք փորել, ցեմենտ շաղախել, ավտոմեքենաներ լվանալ, լինել օժանդակ բանվոր... Բայց այս տարի այնպիսի սատանայական անգործություն է, որ աշխատանք գտնելու ոչ մի հեռանկար չկա։ Ահա արդեն մի տարի է, որ մենք երեխաների համար չենք գնում ոչ նոր հագուստ, ոչ կոշիկներ։ Այդպիսի դրություն, երբ մենք նրանց կերակրելու ոչինչ չենք ունենում, մեր

տանը հաճախ է լինում, քան հակառակը։

Իսկ ահա ինչպես է նկարագրում Արևմըտյան Վիրգինիայի ածխահատների ընտանիքների վիճակը ամերիկյան Ասոշիեյտեդ պրես գործակալության թղթակիցը. «Խուլ, տախտակներով ծածկված փայտե տներ, որ փըտում են անձրևների տակ. Նրանք կանգնած են որպես մռայլ սիմվոլներ հոգեմաշ գործազրկության, որը բռնել է Արևմտյան Վերգինիայի հարավային շրջանների ածխահանքերը։ Կեղտոտ, քաղցած, վատ հագնված երեխաներն ու տղամարդիկ վշտահար դեմքերով կանգնած են ցեխով ծածկված ճանապարհների երկարությամբ... ածխահանքերը փակ են»։

Վերջերս մի գործազուրկ ամերիկյան Կոմպարտիայի «Ուորկեր» թերթում գրել է. «Ես ինձ անվանել չեմ կարող, որովհետև որոշակի անուն չունեմ։ Ես ընտելացել եմ շատ անվանումների և կրերեմ միայն մի քանիսը. «բանվոր», «մարդ», «ամուսին», «հայր», «ընկեր», «կերակրող», «հարևան», «համայնքի անդամ»։ Բայց ես այլևս նրանցից ոչ մեկի հավակնորդը չեմ։ Ես այլևս բանվոր չեմ, քանի որ աշխատանք գտնել չեմ կարող։ Ես չեմ կարող այլևս լինել ամուսին, հայր, կերակրող և նույնիսկ մարդ, քանի որ



չեմ կարող պահել ընտանիքս, որը իմ առաջին պարտականությունն է։ Ես չեմ կարող ընկեր, հարևան, կամ համայնքի անդամ կոչվել, քանի որ միակ համայնքը, որին ես պատկանում եմ,— այդ գործազուրկների համայնքն է՝ ճնշվածների, վշտացածների, կարիքավորների, հուսահատությամբ բռնված մարդկանց համայնքը, որոնք ոչ մի դեր չեն խաղում, ոչ մի պարտականություն չեն կատարում»։

Հարյուր հազարավոր ամերիկյան գործազուրկներ սովից չմեռնելու համար դիմում են զանազան բարեգործական կազմակերպությունների. Նրանք ցանկանում են թեկուզ մի բաժին ստանալ այսպես կոչված կառավարական սննդամթերքների ավելցուկից։ Բայց այդ բաժինը մի մարդու համար կազմում է ընդամենը օրական 10 ցենտ, որով կարելի է գնել միայն կես կիլոգրամ կարտոֆիլ։

Անհավատալի ծանր պայմաններում են գտնվում գործազուրկները Ճապոնիայում։ Նրանք ոչինչ չունեն ուտելու, տեղ չունեն ապրելու։ Կապիտալիզմը բանվորական ուժը վեր է ածել ապրանքի, բայց նա օգտվում է բանվորական ուժի այդ քիչ պահանջից։ Սովից չմեռնելու համար ճապոնական աշխատավորներն ստիպված են ծախել իրենց ար-

յունը։ Ավելի քան մեկ ու կես միլիոն ճապոնացիների համար այդ դարձել է գոյությունը պահպանելու միակ միջոցը։ 200 խորանարդ սանտիմետր արյան համար վճարվում է չորս հարյուր իեն, կամ մի դոլարից մի քիչ ավելի։ Այդպիսին է դատապարտվածների արժեքը։ Աշխատավորության առողջությունը քայքայելու այդ «քաղաքակիրթ» ձևը, որը օրինականացված հանցագործություն է, հաճախ ողբերգական վախճան է ունենում։ Այսպես, համաձայն «Իոմիուրի» թերթի հայտարարության, Տոկիոյի 42-ամյա բնակիչ Սինիտի Նակաձուման, դուրս գալով Կիտասատոյի դոնորական կետից, որտեղ նա հանձնել էր երկու հարյուր խորանարդ սմ արյուն, կորցրել է գիտակցությունը և շուտով վախճանվել։

Կապիտալիզմը է՛լ ավելի անընդունակ է գտնվում օգտագործելու գլխավոր արտադրողական ուժը՝ մարդուն, նրան դատապարտելով աղքատության ու ստորացման։ Կապիտալիստական հասարակական կարգը սպառել է իրեն, արգելակ է դարձել սոցիալական պրոգրեսի ճանապարհին։

Վ. ՍԱՊՈՒԿՈՎ

Նշումների համար

յունը։ Ավելի քան մեկ ու կես միլիոն ճապոնացիների համար այդ դարձել է գոյությունը պահպանելու միակ միջոցը։ 200 խորանարդ սանտիմետր արյան համար վճարվում է չորս հարյուր իեն, կամ մի դոլարից մի քիչ ավելի։ Այդպիսին է դատապարտվածների արժեքը։ Աշխատավորության առողջությունը քայքայելու այդ «քաղաքակիրթ» ձևը, որը օրինականացված հանցագործություն է, հաճախ ողբերգական վախճան է ունենում։ Այսպես, համաձայն «Իոմիուրի» թերթի հայտարարության, Տոկիոյի 42-ամյա բնակիչ Սինիտի Նակաձուման, դուրս գալով Կիտասատոյի դոնորական կետից, որտեղ նա հանձնել էր երկու հարյուր խորանարդ սմ արյուն, կորցրել է գիտակցությունը և շուտով վախճանվել։

Կապիտալիզմը է՛լ ավելի անընդունակ է գտնվում օգտագործելու գլխավոր արտադրողական ուժը՝ մարդուն, նրան դատապարտելով աղքատության ու ստորացման։ Կապիտալիստական հասարակական կարգը սպառել է իրեն, արգելակ է դարձել սոցիալական պրոգրեսի ճանապարհին։

Վ. ՍԱՊՌԻԿՈՎ

Նշումների համար

Նշումների համար




## СОДЕРЖАНИЕ

Стр.



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ազատ Վշտունի— Երկեր, հատոր երկրորդ, 285 էջ, գինը 77 կոպ.։

Վահագն Դավթյան— Թռնդրակեցիներ, 194 էջ, գինը 54 կոպ.։

Պ. Սեւյան— Կարապետ Միտալ, 113 էջ, գինը 13 կոպ.։

Հ. Մ. Գյուլնազարյան— Ակնարկներ հայ մանկական գրականության պատմության, 215 էջ, գինը 70 կոպ.։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 11 1961 г.

ՎՖ 00518 Պատվեր 304 Տպաքանակ 9200

Հանձնված է արտադրության 31/V 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 7/VI 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության 11 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.։